Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի բլոկնոտ

№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն— Երևան ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, Հեռախոս՝ 2—52—78։



# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՐԿՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

Նոյեմբերի 18-ին, Երևանում, Գերագույն Սովետի նիստերի դահլիճում բացվեց Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիան։

Քննարկման համար սեսիան հաստատում է հետևյալ օրակարգը՝ 1. Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի պետական պլանի մասին, 2. Հայկական ՍՍՌ 1960 թվականի Պետական բյուջեի և Հայկական ՍՍՌ 1958 թվականի Պետական բյուջեի կատարման մասին, 3. Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ օրենքի նախագծի մասին, 4. Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքի նախագծի մասին, 5. Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի (Հիմնական Օրենքի) 19 և 47 հոդվածներում փոփոխություններ մտցնելու և Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահու-



թյան Հրամանագրերը հաստատելու մասին։

Օրակարգի առաջին հարցի մասին զեկուցումով հանդես է գալիս Հայկական ՍՍՌ Պետպլանի նախագահ, դեպուտատ՝ Լ. Ս. Խաչատրյանը։

Ռեսպուբլիկայի աշխատավորները ոգեշնչված ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումներով, լայնորեն ծավալելով համաժողովրդական սոցիալիստական մրցությունը մեծ հաջողություններ ձեռք բերեցին 1959 թվականի ժողովրդական տնտեսության պլանների կատարման ուղղությամբ։ Այսպես, օրինակ, համախառն արտադրանքի թողարկման 1959 թվականի տասն ամսվա պլանը կատարվեց ժամկետից շուտ, հոկտեմբերի 22-ին։ Այդ հիմք է տալիս ասելու, որ արդյունաբերական արտադրանքի թողարկման ընթացիկ տարվա պլանը կգերակատարվի ավելի քան 4 տոկոսով։

Այդպիսի խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության բնագավառում։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման լայն միջոցառումներ են նախատեսվում 1960 թվականի ընթացքում։ Ելնելով Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման



1959—1965 թվականների յոթնամյա պլանով սահմանված հիմնական խնդիրներից, ինչպես նաև ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումներից, 1960 թվականի պլանում նախատեսվում է ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը, 1959 թվականին սպասվող կատարողականի համեմատությամբ, ավելացնել 10,3 տոկոսով։ Ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը կաճի 11,8 տոկոսով և սպառման առարկաների արտադրությունը՝ 7,6 տոկոսով։ Զարգացման բարձր տեմպեր են նախատեսվում ծանր արդյունաբերության հետևյալ ճյուղերում. գունավոր մետալուրգիան՝ 8 տոկոսով, քիմիական արդյունաբերությունը՝ 12,2, մեքենաշինությունը՝ 34,5, այդ թվում էլեկտրատեխնիկականը՝ 33,7 տոկոսով, հաստոցաշինականը՝ 32,9, սարքաշինականը՝ 57,4, շինանյութերի արդյունաբերությունը՝ 20,8 տոկոսով։

1960 թվականին նախատեսվում է հնացած կոնստրուկցիայի մի շարք մեքենաներ, հաստոցներ ու սարքեր հանել արտադրությունից և դրանք փոխարինել ավելի ժամանակակից, առավել արտադրողական մեքենաներով ու սարքերով։ Բացի դրանից, պետք է թողարկվեն արտադրանքի նոր տեսակներ,

տրոնք լայնորեն կիրառվելու են ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում։

1960 թվականին զգալի չափով զարգանալու է ռեսպուբլիկայի էներգետիկան։ Էլեկտրաէներգիայի պահանջը այդ թվականին, 1959 թվականի համեմատությամբ, կաճի 8,3 տոկոսով։ Այդ պահանջը պետք է բավարարվի ինչպես ռեսպուբլիկայում արտադրվող էլեկտրաէներգիայի, այնպես էլ Ադրբեջանական ՍՍՌ-ից էլեկտրաէներգիա ստանալու հաշվին։ 1960 թվականը դառնալու է ամբողջ ռեսպուբլիկայի, նրա բոլոր քաղաքների, սովխոզների, կոլտնտեսությունների և բնակավայրերի համատարած էլեկտրիֆիկացումն ավարտելու տարի։

1960 թվականի պլանում զգալի տեղ է հատկացվում թեթև և սննդի արդյունաբերության զարգացմանը։ Արդյունաբերության այդ ճյուղերի արտադրանքի ծավալը 1960 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, կավելանա համարյա 219 միլիոն ռուբլով կամ 5,5 տոկոսով։

Մեծ վերելք է ապրելու գյուղատնտեսությունը։ Յոթնամյա պլանին համապատասխան 1960 թվականին ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մասնագիտացումը պետք է ընթանա խաղողագործության, պտղաբու-



ծության և անասնաբուծության ինտենսիվ զարգացման ուղղությամբ։

1960 թվականին անասնաբուծական մթերքների համախառն արտադրությունը կոլտնտեսություններում և սովխոզներում, 1959 թվականի պլանի համեմատությամբ, կաճի հետևյալ չափով. միս՝ 16,4 տոկոսով, կաթ՝ 15,7, ձու՝ 72,7, բուրդ՝ 11,3 տոկոսով։ Կաճի նաև հացահատիկային, բանջարանոցային և տեխնիկական կուլտուրաների համախառն բերքը։ Նախատեսվում է 1960 թվականին յուրաքանչյուր ֆուրաժային կովի միջին կաթնատվությունը կոլտնտեսություններում հասցնել 1.593 կիլոգրամի, իսկ սովխոզներում՝ 2.002 կիլոգրամի։

Մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսությունը եկող տարի կստանա 660 նոր տրակտոր, 120 կոմբայն և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ ու ավտոմեքենաներ։

Կոլտնտեսություններում ու սովխոզներում զգալի չափով աճելու է հանրային անասունների գլխաքանակը։ Գյուղատնտեսական արտադրության աճին համապատասխան, էապես ավելանալու է գյուղատնտեսական մթերքների մթերումները։

1960 թվականին կգցվեն 5.865 հեկտար

տարածությամբ խաղողի և պտղատու նոր այգիներ, որից 3.285 հեկտարը սովխոզներում։ Նախատեսվում է նոր այգիներ հիմնել հիմնական այն հողերում, որոնք ոռոգվելու են Թալինի, Արզնի—Շամիրամի և Կոտայքի ջրանցքներով։ Այդ վայրերում կազմակերպվելու են խաղողագործական 5 նոր այգիներ։

Օրակարգի երկրորդ հարցի մասին զեկուցումով հանդես եկավ Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստր, դեպուտատ Ա. Կ. Շեկոյանը։

Սեսիան Հայկական ՍՍՌ 1960 թվականի Պետական բյուջեն հաստատեց հետևյալ չափով. եկամուտների գծով 3 միլիարդ 255 միլիոն 10 հազար ռուբլի գումարով, ծախսերի գծով՝ 3 միլիարդ 229 միլիոն 163 հազար ռուբլի գումարով կամ ծախսերի նկատմամբ եկամուտների՝ 25 միլիոն 847 հազար ռուբլի գերազանցումով։ 1960 թվականի Պետական բյուջեն, 1959 թվականի բյուջեի համեմատությամբ, աճում է 397 միլիոն 863 հազար ռուբլով կամ 14,1 տոկոսով։

Պետական բյուջեի եկամուտների գերակշռող մասը, ինչպես նախորդ տարիներին, ստացվելու է պետական և կոոպերատիվ ձեռնարկությունների ու կազմակերպությունների կուտակումներից և 1960 թվականին կազմե-



լու է 2 միլիարդ 987 միլիոն 100 հազար ռուբլի կամ բյուջեի բոլոր եկամուտների 91,8 տոկոսը։

1960 թվականին սոցիալիստական տնտեսությունից ստացվող եկամուտները, նախորդ տարվա համեմատությամբ, աճում են մոտ 377 միլիոն 7 հազար ռուբլով կամ 14,5 տոկոսով։ Դա տեղի կունենա արտադրության հետագա ընդլայնման, ապրանքաշրջանառության աճի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման շնորհիվ։

Բյուջեի գումարից արդյունաբերության և շինարարության վրա ծախսվելու է 1 միլիարդ 629 միլիոն 600 հազար ռուբլի։ Խոշոր գումարներ են ծախսվելու նաև ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ուղղությամբ։

Այնուհետև սեսիան հաստատում է օրակարգի 3-րդ և 4-րդ կետերում նախատեսված հարցերը, այն է. Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ օրենքի նախագիծը և Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքի նախագիծը։ Փոփոխություններ է մտցնում Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի (Հիմնական Օրենքի) 19 և 47 հոդվածներում, ինչպես նաև հաստատում է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության ընդունած Հրամանագրերը։

# ՍՍՌՄ ԺՈՒՌՆԱԼԻՍՏՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ


Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Հայաստանի ժուռնալիստների միության նախագահ


*Այս տարվա նոյեմբերի 12—14-ը, մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի ունեցավ ՍՍՌՄ Ժուռնալիստների Համամիութենական առաջին համագումարը։*

*Համագումարը, որին միութենական բոլոր ռեսպուբլիկաների ժուռնալիստների միություններից մասնակցում էին յոթ հարյուրից ավելի պատգամավորներ, անցավ քաղաքական մեծ վերելքի պայմաններում։ Համագումարը ցուցադրեց սովետական ժուռնալիստների սերտ համախմբվածությունը Կոմունիստական պարտիայի շուրջը, նրանց նվիրվածությունը մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներին, պատրաստակամությունը՝ իրենց բոլոր ուժերն ու ընդունակությունները*



*խսպաս դնելու մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման մեծ գործին։*

*Համագումարում ՍՍՌՄ Ժուռնալիստների միության Կազմբյուրոյի աշխատանքի և միության խնդիրների մասին զեկուցումով հանդես եկավ Կազմբյուրոյի անդամ՝ «Պրավդա» թերթի գլխավոր խմբագիր ընկ. Պ. Ա. Սատյուկովը։*

*ՍՍՌՄ Ժուռնալիստների միության Կանոնադրության մասին զեկուցեց Կազմբյուրոյի գլխավոր քարտուղար ընկ. Պ. Պ. Խրոֆեևը։*

*Լսված զեկուցումների առթիվ համագումարն ընդունեց ընդարձակ բանաձև, հաստատեց ՍՍՌՄ Ժուռնալիստների միության Կանոնադրությունը և ընտրեց ՍՍՌՄ Ժուռնալիստների միության ղեկավար օրգաններ՝ ՍՍՌՄ Ժուռնալիստների միության վարչություն և վերստուգիչ հանձնաժողով։*

*ՍՍՌՄ Ժուռնալիստների միության վարչության առաջին պլենումը ՍՍՌՄ Ժուռնալիստների միության վարչության նախագահ ընտրեց ընկ. Պ. Ա. Սատյուկովին, ինչպես նաև ընտրեց ՍՍՌՄ Ժուռնալիստների միության 22 քարտուղար։*

*Այսպիսով, կազմակերպորեն ձևավորվեց ՍՍՌՄ Ժուռնալիստների միությունը, որը ներկայումս արդեն միավորում է 23 հազար*

ժուռնալիստների՝ հանդիսանալով Սովետական Միության մեջ ամենախոշոր, ստեղծագործական կազմակերպությունը։

Ի՞նչ է իրենից ներկայացնում ՍՍՌՄ ժուռնալիստների միությունը, որո՞նք են նրա խնդիրները։

ՍՍՌՄ ժուռնալիստների միությունը սովետական ժուռնալիստների կամավոր հասարակական ստեղծագործական կազմակերպություն է, որը կոչված է օգնելու պարտիային՝ մեր մամուլի, հրատարակչությունների, ռադիոյի և հեռուստատեսության աշխատանքը բարելավելու գործում։

Ժուռնալիստների ստեղծագործական կազմակերպության խնդիրները անբաժանելի են սովետական մամուլի խնդիրներից, այն մեծ գործերից, որ կատարում է սովետական ժողովուրդը՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Ժուռնալիստների միության խնդիրն է՝ ակտիվ կերպով նպաստել մեր մամուլի կանոարելագործմանը, այն բանին, որ սովետական մամուլը դառնա պարտիայի ավելի ներգործուն զենքը ժողովրդական տնտեսության ղեկավարման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։ Միության խնդիրն է՝ ստեղծագործական կազմակերպությանը հատուկ բոլոր մի-



ջոցներով, ձևերով ու մեթոդներով ապահովել սովետական ժուռնալիստների ակտիվ մասնակցությունը յոթնամյակի առաջադրանքների իրականացման, մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարին։

ՍՍՌՄ ժուռնալիստների միության անդամ կարող են լինել պարբերական մամուլում, ինֆորմացիայի օրգաններում, հրատարակչություններում, ռադիոյում և հեռուստատեսությունում աշխատող կամ թե նրանց աշխատակցող պրոֆեսիոնալ ժուռնալիստները, ֆոտո թղթակիցներն ու նկարիչները, ինչպես նաև առավել ակտիվ բանգյուղթղթակիցները, որոնք մշտապես աշխատակցում են մամուլին ու ռադիոյին և յուրացրել են ժուռնալիստական վարպետությունը։

Կոմունիստական պարտիան բարձր է գնահատում սովետական ժուռնալիստների աշխատանքը, նրանց դերը կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում, աշխատավորների դաստիարակության գործում։ Սովետական մամուլը կոմունիզմ կառուցողների մամուլն է։ «Մեր երկրում,— ասված է ժուռնալիստների առաջին համագումարին ՍՄԿՊ Կենտկոմի ուղղած ողջույնի մեջ,— մամուլը դարձել է ժո-

ղովրդի հոգևոր կյանքի անբաժանելի մասը, իսկ սովետական ժուռնալիստիկան՝ պարտիական ու հասարակական գործունեության կարևորագույն բնագավառ»։ Սովետական ժուռնալիստները պարտիայի հավատարիմ օգնականներն են կոմունիզմի կառուցման համար նրա կազմակերպող ու ոգեշնչող մեծ գործունեության մեջ։ Ավելին, «ժուռնալիստները մեր պարտիայի ոչ միայն հավատարիմ օգնականներն են, այլև բառիս բուն իմաստով նրա հանձնակատարները, նրա մեծ գործի ակտիվ մասնակիցները»,— ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը Կրեմլում սովետական ժուռնալիստների ընդունելության արտասանած ճառում։

Պարտիայի այդ մեծ վստահությունն արդարացնելու, կոմունիզմի մարտական պրոպագանդիստներ ու ակտիվ կառուցողներ լինելու համար սովետական ժուռնալիստները պետք է տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարներին, զինվեն առաջավոր գիտելիքներով, սերտորեն կապված լինեն ժողովրդի հետ, ապրեն նրա գործերով ու խոհերով։ Ժուռնալիստների միությունը, իբրև ստեղծագործական կազմակերպություն, իր ամբողջ գործունեությամբ պետք է նպաստի, որպեսզի մամուլի էջերում ավելի հետա-



քրքիր ձևով, բազմազան ժանրերով լուսաբանվեն մեր երկրի տնտեսական և կուլտուրական շինարարության հարցերը, սովետական ժողովրդի բազմահարուստ կյանքը, յոթնամյակի հերոսների ստեղծագործ աշխատանքն ու հերոսական առօրյան։

Ժուռնալիստների միությունը բոլորովին նորիտասարդ կազմակերպություն է. նա դեռևս առաջին քայլերն է անում այն մեծ խնդիրների լուծման ճանապարհին, որոնք հետաքրքրում և հուզում են ժուռնալիստներին, մեր բանվորական և գյուղական թղթակիցներին։ Ժուռնալիստների միությունն իր ստեղծագործական աշխատանքը կատարելու համար կազմակերպում է սեկցիաներ ու հանձնաժողովներ, ստեղծագործական սեմինարներ ու խմբակներ, լեկտորիումներ, դասընթացներ, պրեսկոնֆերանսներ, հանդիպումներ ընթերցողների հետ և այլն։

Հայաստանի ժուռնալիստների միությունը կազմակերպորեն ձևավորվեց այս տարի ապրիլին՝ Հայաստանի ժուռնալիստների առաջին հիմնադիր համագումարում։ Ներկայումս ժուռնալիստների միության մեջ, մեզ մոտ ընդգրկված են մոտ 400 մարդ. դրանք մեր ռեսպուբլիկայի առավել փորձված ու ակտիվ ժուռնալիստներն են՝ մեր թերթի և

ժուռնալների, հրատարակչությունների և ռադիո-հեռուստատեսության աշխատողներ։

ՍՍՌՄ ժուռնալիստների միության ստեղծումը սովետական մամուլի աճման ու կատարելագործման նկատմամբ Կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարության մի նոր, վառ արտահայտությունն է։ Պարտիայի և կառավարության ղեկավարների ներկայությունը ՍՍՌՄ ժուռնալիստների առաջին համագումարի բացմանը, համագումարի պատգամավորների ընդունելությունը Կրեմլում և ընկեր Ն. Ս. Խրուշչովի փայլուն ճառը ընդունելության ժամանակ, կրկին անգամ ցույց տվեցին, թե պարտիան, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն, որքան բարձր են գնահատում սովետական մամուլը և նրա աշխատողներին։

Սովետական ժուռնալիստներն այսուհետև էլ սրբությամբ կպահպանեն բոլշևիկյան մամուլի տրադիցիաները, կոմունիզմի հաղթանակի համար իրենց անձնվեր պայքարով կարդարացնեն պարտիայի մեծ վստահությունը։

---

---

## ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԻՇԵՐՕԹԻԿ ԴՊՐՈՑՆԵՐԸ

### ԱՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

Գիշերօթիկ դպրոցը պետական հանրակրթական ուսումնա-դաստիարակչական նոր տիպի հիմնարկություն է։ Այդ դպրոցների նպատակն է դաստիարակել կոմունիստական հասարակության համար բազմակողմանի զարգացած, կրթված և ակտիվ կառուցողներ։

Շնորհիվ ստեղծված լայն հնարավորությունների, այստեղ առավել հաջող է իրականացվում սաներին միջնակարգ ընդհանուր և պոլիտեխնիկական կրթությունը, ֆիզիկական, բարոյական ու գեղարվեստական դաստիարակություն տալու գործը, նրանք համեմատաբար լավ են պատրաստվում անմիջական պրակտիկ գործունեության և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական դպրոցներում կրթությունը շարունակելու համար։ Ուսումնական պարապմունքների հիմնական սկզբունքը գիշերօթիկ դպ-

ժուռնալների, հրատարակչությունների և ռադիո-հեռուստատեսության աշխատողներ։

ՍՍՌՄ ժուռնալիստների միության ստեղծումը սովետական մամուլի աճման ու կատարելագործման նկատմամբ Կոմունիստական պարտիայի անդուլ հոգատարության մի նոր, վառ արտահայտությունն է։ Պարտիայի և կառավարության ղեկավարների ներկայությունը ՍՍՌՄ ժուռնալիստների առաջին համագումարի բացմանը, համագումարի պատգամավորների ընդունելությունը Կրեմլում և ընկեր Ն. Ս. Խրուշչովի փայլուն ճառը ընդունելության ժամանակ, կրկին անգամ ցույց տվեցին, թե պարտիան, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեն, որքան բարձր են գնահատում սովետական մամուլը և նրա աշխատողներին։

Սովետական ժուռնալիստներն այսուհետև էլ սրբությամբ կպահպանեն բոլշևիկյան մամուլի տրադիցիաները, կոմունիզմի հաղթանակի համար իրենց անձնվեր պայքարով կարդարացնեն պարտիայի մեծ վստահությունը։

---

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԻՇԵՐՕԹԻԿ ԴՊՐՈՑՆԵՐԸ

ԱՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

Գիշերօթիկ դպրոցը պետական հանրակրթական ուսումնա-դաստիարակչական նոր տիպի հիմնարկություն է։ Այդ դպրոցների նպատակն է դաստիարակել կոմունիստական հասարակության համար բազմակողմանի զարգացած, կրթված և ակտիվ կառուցողներ։

Շնորհիվ ստեղծված լայն հնարավորությունների, այստեղ առավել հաջող է իրականացվում սաներին միջնակարգ ընդհանուր և պոլիտեխնիկական կրթություն, ֆիզիկական, բարոյական ու գեղարվեստական դաստիարակություն տալու գործը, նրանք համեմատաբար լավ են պատրաստվում անմիջական պրակտիկ գործունեության և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական դպրոցներում կրթությունը շարունակելու համար։ Ուսումնական պարապմունքների հիմնական սկզբունքը գիշերօթիկ դպր-

րոցում ուսուցման շաղկապումն է արտադրական աշխատանքի հետ։ Սաներին պրակտիկ գործունեության համար նախապատրաստելն իրագործվում է ուսուցման և բազմապիսի կոլեկտիվ աշխատանքների ընթացքում՝ սկսած ինքնասպասարկման տարրական ձևերից մինչև հասարակական արտադրական աշխատանքին մասնակցելը։

Կենսագործելով հարազատ Կոմունիստական պարտիայի XXI համագումարի որոշումը, ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 12 գիշերային դպրոց, որոնցում ընդգրկված են ավելի քան 3000 աշակերտ։

Գիշերօթիկ դպրոցները երկու տիպի են՝ 8-ամյա և 11-ամյա։ Այդ դպրոցներում սովորում են դեռահասներ ու պատանիներ (7—18 տարեկան)։

Երեխաները գիշերօթիկ դպրոց են ընդունվում ծնողների կամ նրանց փոխարինող անձանց ցանկությամբ։ Առաջին հերթին դպրոց են ընդունվում միայնակ մայրերի, պատերազմի և աշխատանքային հաշմանդամների երեխաները, որբերը, ինչպես նաև այն երեխաները, որոնց դաստիարակության համար ընտանիքում չկան անհրաժեշտ պայմաններ։ Ծնող չունեցող երեխաները գիշերօթիկ դպրոցում պահվում են պետության



հաշվին։ Նյութապես ապահովված ծնողները մասնակցում են իրենց երեխաների վրա կատարվող ծախսերին՝ սահմանված չափով։ Առանձին դեպքերում քաղաքային, շրջանային Սովետների գործադիր կոմիտեների որոշմամբ ծախսերը վճարելուց ազատվում և ամբողջովին պետական միջոցների հաշվին պահվում են բազմազավակ և չապահովված ընտանիքների երեխաները։

Գիշերօթիկ դպրոցում սովորողների ընդհանուր քանակը պետք է լինի 600-ից ոչ ավելի, իսկ յուրաքանչյուր դասարանի աշակերտների քանակը՝ 30։ Ուսումնական տարին գիշերօթիկ դպրոցներում սկսվում և ավարտվում է մասսայական դպրոցների հետ միասին։ Ձմեռային և գարնանային արձակուրդները ևս տրվում են մասսայական դպրոցների հետ միասին։ Ամառվա ընթացքում երեխաներին արձակուրդ է տրվում ծնողների ցանկությամբ։ Գիշերօթիկ դպրոցների սաների ծնողները միշտ հնարավորություն ունեն հանդիպել իրենց երեխաների հետ։ Դրա համար, շատ դպրոցներում արդեն ստեղծված են ծնողների հանդիպման սենյակներ։ Բացի այդ յուրաքանչյուր կիրակի օր ծնողները կարող են երեխաներին տանել տուն։ Երեխաների հանրօգուտ աշխա-

րոցում ուսուցման շաղկապումն է արտադրական աշխատանքի հետ։ Սաներին պրակտիկ գործունեության համար նախապատրաստելն իրագործվում է ուսուցման և բազմապիսի կոլեկտիվ աշխատանքների ընթացքում՝ սկսած ինքնասպասարկման տարրական ձևերից մինչև հասարակական արտադրական աշխատանքին մասնակցելը։

Կենսագործելով հարազատ Կոմունիստական պարտիայի XXI համագումարի որոշումը, ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 12 գիշերային դպրոց, որոնցում ընդգրկված են ավելի քան 3000 աշակերտ։

Գիշերօթիկ դպրոցները երկու տիպի են՝ 8-ամյա և 11-ամյա։ Այդ դպրոցներում սովորում են դեռահասներ ու պատանիներ (7—18 տարեկան)։

Երեխաները գիշերօթիկ դպրոց են ընդունվում ծնողների կամ նրանց փոխարինող անձանց ցանկությամբ։ Առաջին հերթին դպրոց են ընդունվում միայնակ մայրերի, պատերազմի և աշխատանքային հաշմանդամների երեխաները, որբերը, ինչպես նաև այն երեխաները, որոնց դաստիարակության համար ընտանիքում չկան անհրաժեշտ պայմաններ։ Ծնող չունեցող երեխաները գիշերօթիկ դպրոցում պահվում են պետության



հաշվին։ Նյութապես ապահովված ծնողները մասնակցում են իրենց երեխաների վրա կատարվող ծախսերին՝ սահմանված չափով։ Առանձին դեպքերում քաղաքային, շրջանային Սովետների գործադիր կոմիտեների որոշմամբ ծախսերը վճարելուց ազատվում և ամբողջովին պետական միջոցների հաշվին պահվում են բազմազավակ և չապահովված ընտանիքների երեխաները։

Գիշերօթիկ դպրոցում սովորողների ընդհանուր քանակը պետք է լինի 600-ից ոչ ավելի, իսկ յուրաքանչյուր դասարանի աշակերտների քանակը՝ 30։ Ուսումնական տարին գիշերօթիկ դպրոցներում սկսվում և ավարտվում է մասսայական դպրոցների հետ միասին։ Ձմեռային և գարնանային արձակուրդները ևս տրվում են մասսայական դպրոցների հետ միասին։ Ամառվա ընթացքում երեխաներին արձակուրդ է տրվում ծնողների ցանկությամբ։ Գիշերօթիկ դպրոցների սաների ծնողները միշտ հնարավորություն ունեն հանդիպել իրենց երեխաների հետ։ Դրա համար, շատ դպրոցներում արդեն ստեղծված են ծնողների հանդիպման սենյակներ։ Բացի այդ յուրաքանչյուր կիրակի օր ծնողները կարող են երեխաներին տանել տուն։ Երեխաների հանրօգուտ աշխա-



տանքը նրանց ամառային հանգստի հետ զուգակցելը ապահովվում է դպրոցում: Երեխաների աշխատանքային դաստիարակությանը նպատակասլաց ընթացք տալու համար դըպրոցում ստեղծվում են ուսումնական հարուստ կաբինետներ (ֆիզիկայի, քիմիայի, բնագիտության, էլեկտրատեխնիկայի), ուսումնա-արտադրական արհեստանոցներ, տնարարության կաբինետներ, ռադիոհանգույցներ, հանդիսասրահ, ֆիզկուլտ դահլիճ, հանգստի ու խաղի սենյակներ, ինչպես նաև ուսումնա-փորձնական հողամաս կամ ուսումնական տնտեսություն:

Երեխաների աշխատանքային ուսուցումը և արտադրական պարապմունքները տարվում են հատուկ մասնագետների միջոցով:

Կարճ ժամանակ է ինչ գոյություն ունեն գիշերօթիկ դպրոցները: Բայց դրանք արդեն մեծ ճանաչում են գտել հասարակության մեջ: Ամենակարևորն այն է, որ այս դպրոցներում հաջող կերպով է իրականացվում միասնական, համերաշխ և աշխատասեր աշակերտական կոլեկտիվ ստեղծելու խնդիրը: Կոլեկտիվ աշխատանքի պրոցեսում աստիճանաբար ձևավորվում է երեխայի անձնավորությունը, կոփվում կամքն ու բնավորությունը: Նրանք դառնում են տոկուն, աշ-



խատասեր, քաղաքավարի և կուլտուրական:

Դաստիարակչական աշխատանքների նպատակասլաց կազմակերպման շնորհիվ գիշերօթիկ դպրոցում երեխայի անհատական ընդունակությունններն ու ձիրքը առավել հաջող է դրսևորվում, զարգանում և ճիշտ ընթացքի մեջ է դրվում: Այստեղ ամեն ինչ կատարվում է կոլեկտիվում, կոլեկտիվի միջոցով և կոլեկտիվի համար: Երեխաների հետ տարվող դաստիարակչական աշխատանքները ղեկավարելու համար բացի ուսուցիչներից, յուրաքանչյուր դասարան ունի երկուական դաստիարակ: Որպես դաստիարակներ այս դպրոցներում նշանակված են ռեսպուբլիկայի մանկավարժական կադրերից լավագույնները: Շնորհիվ հետևողական դաստիարակչական միջոցառումների կարճ ժամանակվա ընթացքում գիշերօթիկ դըպրոցների սաները դառնում են օրինակելի ու աշխատասեր:

Շատ աշխատանքներ այժմ կատարում են իրենք երեխաները, որը նպաստում է նրանց աշխատանքային դաստիարակությանը:

Բացի գործնական առարկաների ուսուցումից, հաշվի առնելով աշակերտների հակումները, հետաքրքրությունններն ու ունակությունները, բոլոր դպրոցներում կազմա-

կերպված են խառատների, փականագործների, ատաղձագործների, լուսանկարիչների, կինոմեխանիկների, կոշկակարների, կար ու ձևի և շատ ուրիշ խմբակներ։ Այդ խմբակներում երեխաներն ընդգրկվում են ըստ իրենց ցանկության ու հակումների։

Երկու-երեք տարի առաջ կազմակերպված դպրոցներում ստեղծված խմբակներում ընդգրկված աշակերտներն արդեն ձեռք են բերել աշխատանքային որոշակի հմտություններ։ Նրանք այժմ կարողանում են պատրաստել դույլեր, ցնցուղներ, բռնիչներ, մուրճեր, ծաղկամաններ, սպորտային գավաթներ, մոդելներ, մակետներ, աթոռիկներ, կարում են հագուստներ, ասեղնագործում սեղանի ծածկոցներ, կատարում ֆոտո աշխատանք, ցուցադրում կինոնկարներ և այլն։

Բացի տեխնիկական խմբակներում կատարվող աշխատանքից, երեխաները լայնորեն ընդգրկված են նաև հանրօգուտ, ինքնասպասարկման աշխատանքի մեջ։ Այժմ աշակերտներն իրենք են հարդարում իրենց անկողինները, մաքրում ննջարանները, արհեստանոցները, բակը, կարում անձեռոցիկները, կոճակները, վերանորոգում գուլպաները և այլն։

Հերթապահության կարգով երեխաները



մաքրում են ընդհանուր օգտագործման սենյակները՝ դահլիճը, գրադարանը, պիոներական սենյակը, միջանցքները, սրահները, հետևում են կարգ ու կանոնին և գույքի պահպանմանը։ Աշակերտներն են հետևում բակի սպորտ հրապարակի մաքրությանը, պահպանում են բակում եղած գույքը և ունեցվածքը։ Ճաշարանում հերթապահներն օգնում են խոհարարներին պահեստից սնընդամթերք ստանալիս, մաքրում և ճաշի համար նախապատրաստում են բանջարեղենը, ճաշ եփելիս օգնում են խոհարարներին, իրենց ամրացված խմբերին մատակարարում են ճաշ, ճաշից հետո մաքրում սեղաններն ու ճաշարանը և օգնում ամանների լվացմանը։ Այս բոլոր աշխատանքների պրոցեսում երեխաները ձեռք են բերում տնարարական հմտություն։

Դպրոցների մի մասը (Կիրովական, Լենինական, Արզնի) արդեն ունեն իրենց ուսումնա-փորձնական հողամասերը։ Երեխաները շնորհալի գործեր են կատարում այդ հողամասերում։ Կիրովականի և Լենինականի դպրոցները օրինակելի կերպով մշակված հողամասերից ստացած մրգով ու բանջարեղենով բարելավում և ուժեղացնում են երեխաների սնունդը, նրանց ապահովում թարմ

մրգով ու բանջարեղենով։ Հողամասի մշակումը նաև շատ է նպաստում երեխաների կոլեկտիվ դաստիարակությանը։ Յուրաքանչյուր դասարան, իրեն ամրացված փոքրիկների հետ միասին, կազմում են հողամասը մշակող մի արտադրական բրիգադա, որն իր հերթին բաժանվում է օղակների։ Բրիգադան իր կողմից ընտրում է բրիգադիր, իսկ օղակը՝ օղակավար։

Հողամասի մշակման բոլոր աշխատանքները ղեկավարում է ագրոնոմը։ Հողամասում երեխաների կատարած աշխատանքը ունի ուսուցողական խոշոր նշանակություն։ Երեխաները սովորում են՝ հողը պարարտացնել քիմիական և օրգանական պարարտանյութերով, կատարել ցանք, սածիլում, քաղհան, փխրեցում, բուժում, աճեցնել պտղատու ծառեր, պայքարել գյուղատնտեսական վնասատուների դեմ և այլն։

Դպրոցների արհեստանոցներում, ուսումնա-փորձնական հողամասում ինքնասպասարկման և հանրօգուտ աշխատանքի միջոցով երեխաների մեջ սեր ու հետաքրքրություն է ստեղծվում ոչ միայն դեպի ֆիզիկական աշխատանքը, այլև աշխատանքի մարդիկ, հասարակական բարիքներ արտադրողները։ Պատահական չէ, որ այժմ Երևա-



նի №№ 1, 2, 3, 5 դպրոցների աշակերտները ոչ միայն ակտիվ մասնակցություն են ունենում խմբակային պարապմունքներին, այլև իրենք էլ են ձգտում նյութական արժեքներ ստեղծել, իրենց աշխատանքի պտուղները տեսնել։ Օրինակ № 1 գիշերօթիկ դպրոցում 25 աշակերտներ այնպես են հմտացել խառատի մասնագիտության գծով և 15 աշակերտներ կոշկակարության գծով, որ արտադրության մեջ կարող են կատարել 3-րդ և 4-րդ կարգի խառատի կամ կոշկակարի աշխատանք։ Կիրովականի № 2 գիշերօթիկ դպրոցի շատ աշակերտներ դպրոցի հողամասի մշակման պրոցեսում դարձել են այգեգործներ և բանջարաբույծներ։ Կիրովականի գիշերօթիկ դպրոցի սաները հրճվանքով ու հպարտությամբ ցույց են տալիս իրենց նորոգած մահճակալները, պատրաստած հագուստի կախիչները, շենքի նորոգման համար մետաղյա մասերը, դռների բռնակները։ Այս դպրոցում երեք տարվա ընթացքում կոշկակարական խմբակում ընդգրկված երեխաները վերանորոգել են ավելի քան 2000 զույգ կոշիկ։

Գիշերօթիկ դպրոցներում լայն հնարավորություններ են ստեղծված երեխաների էսթետիկական դաստիարակության համար։

Բոլոր դպրոցներն ունեն դաշնամուրներ, լարային և փողային երաժշտական գործիքներ, հեռուստացույցներ, ռադիոընդունիչներ և երաժշտական զանազան գործիքներ։ Յուրաքանչյուր դպրոց ունի երգ-երաժշտության գծով մասնագետ աշխատող, որոնց ղեկավարությամբ ծավալվում է երեխաների գեղարվեստական ինքնագործունեությունը։ Դպրոցներում կան սամուսքի, երգ ու պարի, թատերական, նկարչական, քանդակագործական խմբակներ։

Գիշերօթիկ դպրոցների ցանցի ընդարձակման ու զարգացման համար կան լայն հեռանկարներ։ Այդ նպատակով նախատեսվում է գիշերօթիկ դպրոցների շենքերի շինարարություն։ Այսպես, օրինակ՝ 1960 թվականին գիշերօթիկ դպրոցների շենքեր են կառուցվելու Դիլիջանում, Կիրովականում, Հոկտեմբերյանում, Լենինականում։ Այնուհետև ըստ տարիների գիշերօթիկ դպրոցների շենքեր են կառուցվելու 1960—61 ուսումնական տարում 16, 1961—62 ուսումնական տարում՝ 12 և ապա սկսած 1963—66 թվականներից՝ յուրաքանչյուր ուսումնական տարում 10-ական։ 1965—66 ուսումնական տարում գիշերօթիկ դպրոցներում սովորողների թիվը այժմյան 3.000-ից կհասցվի 24.000-ի։

---



# ՔԻՄԻԱՆ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԺՈՂՈՎՐԴԻՆ

Մ. ՄԱՐԴՈՅԱՆ

Օրեցօր աճում և ծաղկում է մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերությունը։ Այժմ ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում թողարկվում են ժողովրդական տնտեսության համար կարևոր այնպիսի արտադրանքներ, ինչպիսիք են՝ ավտոդողերը, կաուչուկը, կարբիդ-կալցիումը, կաուստիկ սոդան, հանքային պարարտանյութերը, ծծմբային, քացախային ու աղային թթուները և շատ ուրիշ արժեքավոր նյութեր։

ՍՄԿԿ Կենտկոմի 1958 թվականի Մայիսյան պլենումը, ելնելով պարտիայի XX համագումարի որոշումներից, ծրագրեց քիմիական արդյունաբերության հետագա բուռն զարգացում, հատկապես պլաստմասսաների, արհեստական ու սինթետիկ մանրաթելի և սինթետիկ կաուչուկի արտադրության գործում։

Ղարադաղի բնական գազը հիանալի հումք է հանդիսանում քիմիական արդյունաբերության համար։ Մինչև օրս կաուչուկի և քիմիական մի շարք նյութերի արտադրությունը հիմնված էր ացետիլենի վրա, որն ստացվում էր կալցի-կարբիդից։ Բնական գազից ստացվող մեկ տոննա ացետիլենի ինքնարժեքը և նրա արտադրության համար կապիտալ ներդրումները մոտ 40 տոկոսով ավելի պակաս են, քան կարբիդից ստացվող մեկ տոննայինը։ Կիրովի անվան գործարանում 6.400 խորանարդ մետր բնական գազի վերամշակումից կստացվի մեկ տոննա ացետիլեն, որը կօգտագործվի կաուչուկի և ուրիշ կարևոր քիմիական նյութեր արտադրելու համար, իսկ արտադրության մնացուկները կօգտագործվեն որպես վառելանյութ։

Կիրովականի քիմիական կոմբինատում բնական գազը մշակելիս, նրա մնացուկները օգտագործվելու են որպես հումք՝ պարարտանյութ ստանալու համար։

Ղարադաղի բնական գազը, որպես ամենից նպատակահարմար և էժան հումք, ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկություններին հնարավորություն կտա ընդլայնելու թողարկվող արտադրան-



քը։ Այսպիսով, լայն պայմաններ կստեղծվեն ժողովրդական տնտեսության և բնակչության աճող կարիքները բավարարելու համար։ Պոլիվինիլացետատ գործարանում ժամկետից շուտ յուրացվեցին վինիֆլեքսային խեժի և մեկուսացնող լաքի արտադրությունը։ Վերջինս աչքի է ընկնում իր էլեկտրամեկուսիչ բարձր հատկություններով, դրա համար էլ այն հաջողությամբ օգտագործվում է էլեկտրամեքենաշինության, սարքաշինության և ռադիոտեխնիկայի արտադրության մեջ։

Նույն գործարանում նախատեսված է ցելյուլոզի մշակումը, որը հնարավորություն կտա արտադրել կինոժապավեններ, թափանցիկ թիթեղիկներ, արհեստական թելեր, հեռախոսափողեր, ակնոցների շրջանակներ, մեքենաների ղեկանիվներ և այլ իրեր։

Ցելյուլոզայի բազայի հիման վրա յոթնամյակում Կիրովականում հիմնադրվելու է առանձին գործարան, որը արտադրելու է ացետատային մետաքս։ Այս մանվածքը երկու անգամ ավելի դիմացկուն է, քան վիսկոզային մանվածքը, և համարյա չի կորցնում իր դիմացկունությունը խոնավ վիճակում։ Դրանից ստացված գործվածքը օժտված է

ուլտրամանուշակագույն ճառագայթները թափանցելու հատկությամբ։ Ացետիլենի մետաքսի մանվածքը մեծ կիրառություն կգտնի ռեսպուբլիկայի տեքստիլ արդյունաբերության մեջ՝ լայն սպառման բարձրորակ ապրանքներ արտադրելու գործում։ Ացետիլենային մետաքսի որոշ մասը կգործադրվի ավտոդողերի արտադրության համար։ Նախատեսված է Հրազդան քաղաքում կառուցել կապրոնային կորդի գործարան։

Ավտոդողերի արտադրության մեջ բավմաթելը կապրոնով փոխարինելը հնարավորություն կտա 40 տոկոսով ավելացնել ավտոդողերի վազքը, իսկ կաուչուկի ծախսումը կրճատել մոտավորապես 20 տոկոսով։ Բացի այս, կտնտեսվի 25 հազար տոննա երկարաթել բարձրորակ բամբակ։

Պոլիվինիլացետատ գործարանում յուրացվել է մի շարք կարևոր քիմիական նյութ, որը հնարավորություն է տալիս արտադրել չկոտրվող ապակիներ։

Յոթնամյա պլանով նախատեսված է Կիրովի անվան գործարանում պոլիվինիլքլորիտ խեժի արտադրություն։ Սրա հիման վրա պատրաստված պլաստմասսաները ունեն զարգացման անսահման հեռանկարներ։ Նրանց միջոցով կարտադրվեն կաբելի և



հեռախոսային լարերի մեկուսիչներ, որը կտա մեծ քանակությամբ կապարի, բամբակեղենի և մետաքսյա թելի խնայողություն։ Պոլիվինիլքլորիտի խառնուրդները կօգտագործվեն արհեստական կաշվի, կոշկեղենի և գալանտերեայի արտադրության մեջ։ Այժմ արդեն վաճառքի են հանված այդ նյութից պատրաստված անձրևանոցներ, սեղանի սփռոցներ, կոշիկներ և այլն։ Առավել մեծ ու լայն հեռանկարներ ունի պոլիվինիլքլորիտը շինարարության մեջ։ Նրանցից կըպատրաստվեն լինոլեումներ, գունավոր պարկետներ, խողովակներ, սանիտարական-տեխնիկական առարկաներ և այլ իրեր։ Պլաստմասսաների օգտագործումը շինարարության մեջ, բավականին կկրճատի բանվորական ուժը և կարագացնի շինարարությունը։

Պոլիվինիլքլորիտի մյուս միացումները կօգտագործվեն մեքենաշինության, գյուղատնտեսության, լաքերի ու ներկերի, սինթետիկ մանրաթելի՝ քլորինի արտադրության մեջ և ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում։

Մոտակա տարիներին, ինչպես նախատեսված է յոթնամյա պլանով, Կիրովականի քիմիական կոմբինատում շահագործման

կհանձնվեն դիցիանդիամիդի և մելամինի արտադրության ցեխերը։ Դիցիանդիամիդը հանդիսանում է մելամինի արտադրության հիմնական հումքը, որը կարելի է օգտագործել նաև պլաստմասսաների, սոսինձի, լաքերի արտադրության համար, ինչպես նաև տեքստիլ արդյունաբերության մեջ։ Մելամինը և նրա սինթետիկ խեժերը լայն կիրառություն կգտնեն բարձրորակ սոսինձների պատրաստման գործում, որոնք կփոխարինեն թանկարժեք և հազվագյուտ կազեինային սոսինձին, որն օգտագործվում է ֆաներային արտադրության մեջ։ Մելամինից պատրաստված լաքերը աչքի են ընկնում իրենց բարձր էլեկտրամեկուսիչ, ջերմա և ջրակայուն հատկություններով, որոնց շնորհիվ էլ լայն օգտագործում կգտնեն էլեկտրամեքենաշինության արտադրության մեջ։ Մելամինի լուծույթով հագեցված թղթե և գործվածքե պարկերը հանդիսանում են խոնավություն չթափանցող լավագույն տարաներ՝ զանազան ապարատների փոխադրման համար, որոնց անհրաժեշտ է պահպանել խոնավությունից։ Օրինակ, քիմիկատները, սննդամթերքները և այլն։ Մելամինի առանձնահատկություններից մեկն էլ նրա չխտանալու (չմտնելու) հատկությունն է։



Մելամինի լուծույթով հագեցված գործվածքը լվանալու ժամանակ չի խտանում, որը և տալիս է գործվածքեղենի խնայողություն 10—15 տոկոսի չափով։ Մելամինի միացությունը ուրիշ քիմիական նյութերի հետ, տալիս է պլաստմասսաների արժեքավոր նոր տեսակներ՝ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում օգտագործելու համար։ Այդ կոմբինատում 1959 թվականի սեպտեմբերին շահագործման հանձնվեց սինթետիկ կորունդի ցեխը։ Սինթետիկ կորունդն ունի կարևոր նշանակություն ժողովրդական տնտեսության համար։

Նախատեսված է ռեսպուբլիկայում կառուցել նաև քիմիական հակազդակների, դեղագործական պրեպարատների գործարաններ, ինչպես նաև տեխնիկական քիմիայի արտադրությունը, որը լայն կիրառում կգտնի անասնաբուծության մեջ։

Նշված քիմիական նյութերի յուրացումը յոթնամյակում կհանդիսանա ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր և պատասխանատու խնդիրներից մեկը։

---

# ԵԿԱՄՈՒՏՆԵՐԻ ԲԱՇԽՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Դ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության ավագ տեսուչ-վերահսկիչ

*Շուտով կոլտնտեսություններում կավարտվի 1959 թվականի տնտեսական տարին, հանրագումարի կբերվեն ձեռք բերված հաջողությունները և կկատարվեն եկամուտների բաշխումներ։*

*Կոլտնտեսություններում եկամուտների բաշխումը քաղաքական և տնտեսական կարևոր նշանակություն ունեցող գործ է։ Եկամուտների բաշխման ճիշտ կազմակերպումը և անցկացումը մեծապես կնպաստեն հանրային տնտեսության հետագա առավել զարգացմանը, կոլտնտեսականների բարեկեցության բարձրացմանը։*

*1958 թվականի նախորդ տարվա համեմատությամբ մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտները աճեցին ավելի քան 200 միլիոն ռուբլով, հասնելով մեկ միլիարդ 25 միլիոն ռուբլու։ Միլիոնատեր և բազմամիլիոնատեր կոլտնտեսությունների թիվը 247-ից հասավ 328-ի, անբաժանելի ֆոնդերին հատկացվեց 199,3 միլիոն ռուբլի, յուրաքանչյուր աշխօրին բաշխվող եկամուտները ավելացան շուրջ 17 տոկոսով։ Այս բարձր ցուցանիշները արդյունք են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնաբուծության մթերատվության բարձրացման։*



*1959 թվականի տնտեսական տարում գյուղատնտեսական մթերքների ավելի առատություն է ստեղծված և ավելի լավ նախադրյալներ կան կոլտնտեսություններում եկամուտները հաջող բաշխելու համար։*

*Եկամուտների բաշխման կարևորագույն նախապայմանը նաև այն է, որ այն կատարվի մեր կոլտնտեսային գյուղացիության ակտիվ մասնակցությամբ։*

*Մինչև եկամուտների բաշխումը պետք է կազմակերպված անցկացնել կոլտնտեսությունների ունեցվածքի գույքագրումը (ինվենտարիզացիան)։*

*Գույքագրման աշխատանքներում, որը*

սկսվել է դեկտեմբերի 1-ից և ավարտվելու է մինչև 1960 թվականի հունվարի 1-ը, պետք է ընդգրկել կոլտնտվարչության, վերստուգիչ հանձնաժողովի և հանրային արտադրության մեջ աշխատող, բարեխիղճ ու օբյեկտիվ կոլտնտեսականների։

Կոլտնտեսության գույքագրման հանձնաժողովը պետք է կշռի, հաշվի, ստուգի և հաշտաբերի գույքի, մթերքների, նյութերի, ինչպես նաև դրամական ու այլ միջոցների փաստացի քանակը, դուրս բերի մնացորդները։ Այնուհետև կոլտնտեսության ունեցվածքի հաշվապահական մատյաններով մնացորդները պետք է համեմատել նրանց բնականում եղած քանակի հետ, պարզել ավելցուկները և պակասորդները (եթե այդպիսիք կան) այն հաշվով, որպեսզի ըստ հաշիվների մնացորդները տարեկան հաշվետվության մեջ լրիվ ու ճշտորեն համապատասխանեն գույքային ցուցակների տվյալներին։

Եթե գույքային հանձնաժողովը եկամուտների բաշխման գործում թույլ տա սխալներ, ապա հանրային ունեցվածքի շռայլման փաստերը կարող են անխուսափելի լինել։

Կոլտնտեսությունների եկամուտների բաշխման գործում խոշոր ճեղքվածք կարող է



առաջացնել դեբիտորական և գերավանսավորման պարտքերը։

Եթե մինչև եկամուտների բաշխումը չըգանձվեն ու չլիկվիդացվեն առաջացած պարտքերը, հնարավոր չի լինի ժամանակին և լրիվ չափով վճարել կոլտնտեսականների աշխօրերի հասույթը, հետևաբար կոպիտ կերպով կխախտվի եկամուտների բաշխման սկզբունքը ի հաշիվ բարեխիղճ կոլտնտեսականների։ Այդ հանգամանքը կարող են չարաշահել անբարեխիղճ անձինք։

Դեբիտորական և գերավանսավորման պարտքերը գանձելու և լիկվիդացնելու գործով կարելի է հետևել Կամոյի և Կիրովականի շրջանների կոլտնտեսությունների օրինակին, որոնք 1959 թվականի տարեսկզբին ունեցած զգալի չափերի հասնող պարտքերը գանձել և մինիմում չափի են հասցրել։ Նրանք հնարավորություն ունեն մինչև եկամուտների բաշխումը լրիվ չափով գանձել ու լիկվիդացնել նաև պարտքերի մնացորդը։

Եկամուտների բաշխումը հաջող ու կազմակերպված կանցկացվի այն դեպքում, երբ կոլտնտեսությունները պետական պարտավորությունները կատարելու հետ միասին ժամանակին առանձնացրել են սերմացուն,

ապահովագրական, կերի ֆոնդերը, գանձել և լիկվիդացրել են գերավանսավորման ու դեբիտորական պարտքերը, վճարել են կրեդիտորական պարտքերը, համապատասխան գումար են հատկացրել անբաժանելի ֆոնդի համար, փակել են ընթացիկ տարվա արտադրական և վարչատնտեսական ծախսերը, ստեղծել են օգնության և կուլտուրական կարիքների ֆոնդեր և այլն։

Կոլտնտեսություններում ստացվող եկամուտների ներկա աճը հնարավորություն է տալիս կենսագործելու կոլտնտեսականներին ամեն ամսյա դրամական ավանս տալու կարևորագույն միջոցառումը։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների Սովետը 1956 թվականի մարտի 6-ի համատեղ որոշմամբ միջոցառումներ մշակեցին և խորհուրդ տվին կոլտնտեսություններին՝ լրիվ չափով կիրառել կոլտնտեսականներին ամենամսյա դրամական ավանս տալու կարգը, քանի որ մինչ այդ գոյություն ունեցող պրակտիկան, երբ աշխօրերի դիմաց բաշխելու ենթակա եկամուտների հիմնական մասը կոլտնտեսականներին տրվում էր միայն տարին ավարտելուց հետո, չէր համապատասխանում հանրային տնտեսության զարգացման գոր-



ծում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությանը։

Պարտիայի և կառավարության դիրեկտիվները կենսագործելու, կոլտնտեսականներին ամենամսյա դրամական ավանս տալու համար անհրաժեշտ է ավանսավորման ֆոնդ ստեղծել և այն լրացնել ու հարստացնել, որպեսզի գալիք տարին հնարավոր լինի կոլտնտեսականներին ամեն ամիս ավանս տալ։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների զգալի մասը արդեն կիրառում է ամեն ամիս դրամական ավանս տալու կարգը։ Իջևանի շրջանի Ենոքավանի, Կամոյի շրջանի Նորադուզի, Շահումյանի շրջանի Ստալինի և Շահումյանի անվան, Մեղրու շրջկենտրոնի և շատ ուրիշ կոլտնտեսություններ անցել են դրամական վարձատրության և կոլտնտեսականներին յուրաքանչյուր ամիս ավանսի կարգով, դրամական վարձատրությունն են տալիս։

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման, կոլտնտեսականների բարեկեցության բարձրացման հիմնական հարցերից մեկը դա կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի ավելացումն է։

Անբաժանելի ֆոնդի ավելացմամբ ամենից առաջ շահագրգռված է կոլտնտեսային

գյուղացիությունը, որովհետև այն համապատասխանում է նրա անձնական շահերին։ Որքան մեծ լինի անբաժանելի ֆոնդը, կոլտնտեսությունը այնքան շատ մեքենաներ կունենա, այնքան լավ մեքենայացված կլինեն գյուղատնտեսական աշխատանքները, ավելի թեթև կլինի կոլտնտեսականների միջոցով կատարվելիք գործը, բարձր կլինի արտադրողականությունը և արագ կզարգանա հանրային տնտեսությունը։

Այս կապակցությամբ օրինակ կարող է ծառայել էջմիածնի շրջկենտրոնի Լենինի անվան կոլտնտեսությունը, (կոլտնտվարչության նախագահ Ե. Մարգարյան), որը 1958 թվականին ստացավ 16,4 միլիոն ռուբլի դրամական եկամուտ և նույն տարում անբաժանելի ֆոնդին հատկացրեց շուրջ 3 միլիոն ռուբլի։ Կոլտնտեսության անբաժանելի ֆոնդը այժմ հասնում է 26,5 միլիոն ռուբլու։

Այս տարի կոլտնտեսությունները ավելի բարձր կազմակերպվածությամբ կկատարեն եկամուտների բաշխումը և նոր հաջողություններով կդիմավորեն ՍՄԿԿ Դեկտեմբերյան պլենումը։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՑՅԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԴԵՊԻ ՀԿԿ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

(Թվեր և փաստեր)

Աշխատանքային բուռն խանդավառությամբ են համակված մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ Նրանք ուժ ու եռանդ չեն խնայում սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու, ՀԿԿ XXI համագումարը նոր հաջողություններով նշանավորելու համար։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։

✪ Այս տարվա նոյեմբեր ամսի տվյալներով ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 100,7 տոկոսով կատարել են կովերի գլխաքանակն ավելացնելու պլանը։ 1959 թվականի գյուղատնտեսական տարում խոզերի գլխաքանակը կոլտնտեսություններում ավելացել է 122,6 տոկոսով, իսկ սովխոզներում՝ 119,7 տոկոսով։

✪ Անասնաբուծության զարգացման 1959 թվականի պլանը բարձր ցուցանիշներով են կատարել Հոկտեմբերյանի, Ապարանի, Արթիկի, Թալինի, Բասարգեչարի, Ն-

ղեգնաձորի, Ղափանի, Մարտունու, Շահումյանի, Էջմիածնի և մի շարք ուրիշ շրջաններ։

✪ Ռեսպուբլիկայի ծխախոտագործական կոլտնտեսությունները նոյեմբերի 20-ի տվյալներով, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 6,5 տոկոսով ավելի շատ ծխախոտ են հանձնել պետությանը։

✪ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները այս տարվա 10 ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացրել են 91 հազար 466 ցենտներով։ Նույն ժամանակամիջոցում առանձնապես բարձր ցուցանիշների են հասել Ազիզբեկովի, Ախուրյանի, Կիրովականի, Իջևանի, Նոյեմբերյանի, Հոկտեմբերյանի, Սպիտակի, Էջմիածնի և մի շարք ուրիշ շրջաններ։

✪ 1959 թվականի գյուղատնտեսական տարվա 10 ամսում Կալինինոյի շրջանի կոլտնտեսություններն ամեն մի կովից ստացել են 2043 կիլոգրամ կաթ, Հոկտեմբերյանի կոլտնտեսությունները՝ 1936 կիլոգրամ կաթ, Էջմիածնի կոլտնտեսությունները՝ 1810 կիլոգրամ կաթ, Ստեփանավանի կոլտնտեսությունները՝ 1633 կիլոգրամ, Ամասիայի կոլտնտեսությունները՝ 1522 կիլոգրամ և այլն։ Այդ նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը կազմել է 1350 կիլոգրամ։

✪ Այս տարի կոլտնտեսություններում զգալիորեն



ավելացել է բրդի արտադրությունը։ 1959 թվականի 10 ամսում, 1958 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները բրդի արտադրությունն ավելացրել են ավելի քան 741 ցենտներով։

Ոչխարների բրդատվությունը բարձրացնելու մասին ստանձնած պարտավորությունը Եղեգնաձորի շրջանի կոլտնտեսությունները կատարել են 116,1 տոկոսով, Նոյեմբերյանինը՝ 121,6, Սպիտակինը՝ 111,7, Ապարանինը՝ 104,4, Բասարգեչարինը՝ 108,1 տոկոսով և այլն։

✪ 1959 թվականի նոյեմբերի 1-ի տվյալներով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում, 1958 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, ձվի արտադրությունն ավելացել է 158,8 տոկոսով։

✪ Ռեսպուբլիկայի մի շարք շրջաններ բարձր ցուցանիշներով են կատարում մսի արտադրությունն ավելացնելու վերաբերյալ իրենց ստանձնած պարտավորությունները։ Եղեգնաձորի շրջանը սոցմրցությամբ նախատեսված 6774 ցենտների փոխարեն մսի արտադրությունը հասցրել է 8.082 ցենտների, Սպիտակի շրջանը՝ 5892 ցենտների փոխարեն, 6955 ցենտների, Հոկտեմբերյանի շրջանը՝ 7087 ցենտների փոխարեն 8657 ցենտների և այլն։

✪ Կիրովականի շրջանի կոլտնտեսությունները այս տարվա տասն ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, խոզի մսի արտա-

դրության պլանը կատարել են 287,2 տոկոսով, Իջևանինը՝ 166,1 տոկոսով, Կրասնոսելսկինը՝ 218,7 տոկոսով, Սպիտակինը՝ 174,5 տոկոսով և այլն։

✪ Ազիզբեկովի շրջանում այս տարվա 9 ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացել է 29, կաթինը՝ 13,8, ձվինը՝ 36 տոկոսով։

✪ Գյուղատնտեսության զարգացման բնագավառում մեծ աշխատանք է կատարվելու 1960 թվականին։

Կոլտնտեսությունների 1960 թվականին յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց կենդանի քաշով կստանան 43,5 ցենտներ միս, 1959 թվականի 37,8 ցենտների դիմաց, 192 ցենտներ կաթ, նախորդ տարվա 166,6 ցենտների դիմաց։

✪ Նույն ժամանակամիջոցում մսի գնումներն ու հանձնումները (կենդանի քաշով) կավելանան 2.700 տոննայով, կաթինը՝ 11.300 տոննայով, ձվինը՝ 4 միլիոն հատով, բրդինը՝ 300 տոննայով, բամբակինը՝ 500 տոննայով, բանջարեղենինը՝ 5 հազար տոննայով։

✪ 1960 թվականին կոլտնտեսությունները յուրաքանչյուր ֆուրաժային կովից կստանան 1.593 կիլոգրամ կաթ, իսկ սովխոզները՝ 2.002 կիլոգրամ։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՍՌՄ Պետական բյուջեն

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Օրենք Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության 1960 թվականի Պետական բյուջեի մասին, *ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 31-ի համարում։*

Օրենք ՍՍՌ Միութենական ռեսպուբլիկաների բյուջետային իրավունքների մասին, *ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 3-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Երրորդ սեսիան, *ինֆորմացիոն հաղորդագրություններ տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 28—31-ի համարում։*

Ա. Ն. ԿՈՍԻԳԻՆ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 30-ի համարում։*

Վ. Ռ. ՂԱԶԱՐՅԱՆ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովե-

տի երրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 30-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը ՍՍՌՄ 1958 թվականի Պետական բյուջեի կատարման հաշվետվությունը հաստատելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 31-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիան, *գրույց, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի 21-րդ համարում։*

## 2. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի Պետական պլանը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Օրենք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի պետական պլանի մասին, *հաստատված ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 31-ի համարում։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիան, *ինֆորմացիոն հաղորդագրություններ, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հոկտեմբերի 28—31-ի համարում։*

Կյանքի հրամայական պահանջը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 3-ի համարում։*



## 3. Հավերժական խաղաղություն տանող ուղին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական Միության միջազգային դրության մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում, 1959 թվականի հոկտեմբերի 31-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Դիմումը աշխարհի բոլոր երկրների պառլամենտներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 1-ի համարում։*

Ա. Բ. Արիստով— Խաղաղության և ժողովուրդների պահպանության լենինյան գաղափարների հաղթանակը, *զեկուցում տրված Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

## 4. Հայկական ՍՍՌ Պետական բյուջեն

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Միութենական Ռեսպուբլիկաների պետական բյուջեն, *ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 3-ի համարում։*

Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական

Ռեսպուբլիկայի 1960 թվականի Պետական բյուջեի մասին, *ընդունված Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 27-ի համարում։*

Ա. Կ. ՇԵԿՈՅԱՆ— Հայկական ՍՍՌ Պետական բյուջեի և Հայկական ՍՍՌ 1958 թվականի Պետական բյուջեի կատարման մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 19-ի համարում։*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի բյուջետային հանձնաժողովի նախագահ, դեպուտատ Գ. Տ. Զոլախյանի հարակից զեկուցումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 20-ի համարում։*

Դեպուտատների ելույթներ Հայկական ՍՍՌ Հինգերորդ Գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 20—24-ի համարներում։*

## 5. Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի պլանը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

**Օրենք Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի պետական պլանի**



**մասին,** *ընդունված Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22-ի համարում։*

Լ. Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1960 թվականի պետական պլանի մասին, *զեկուցում տրված Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 19-ի համարում։*

Դեպուտատների ելույթներ Հայկական ՍՍՌ հինգերորդ Գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի 20—24-ի համարներում։*

## 6. Հայկական ՍՍՌ դատարանակազմության նոր օրենքը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Օրենք Հայկական ՍՍՌ դատարանակազմության մասին, *ընդունված Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 24-ի համարում։*

Ս. Ս. ՌՍԿԱՆՅԱՆ— Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքի նախագծի մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22-ի համարում։*

Դեպուտատների ելույթներ Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքի նախագծի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22—24-ի համարներում։*

## 7. Սովետական դեմոկրատիզմի հետագա զարգացումը

### *ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Օրենք Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի մասին, *ընդունված Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22-ի համարում։*

Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎ— Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ օրենքի նախագծի մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ հինգերորդ Գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22-ի համարում։*

Դեպուտատների ելույթներ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ օրենքի նախագծի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22—24-ի համարներում։*



## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ПРОМЫШЛЕННЫЕ ТЕМЫ



### СЕЛЬСКОХОЗЯЙСТВЕННЫЕ ТЕМЫ



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ




Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

Դեպուտատների ելույթներ Հայկական ՍՍՌ դատարանակազմության օրենքի նախագծի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22—24-ի համարներում։*

## 7. Սովետական դեմոկրատիզմի հետագա զարգացումը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Օրենք Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի մասին, *ընդունված Հայկական ՍՍՌ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22-ի համարում։*

Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎ.— Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ օրենքի նախագծի մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ հինգերորդ Գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22-ի համարում։*

Դեպուտատների ելույթներ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատին ետ կանչելու կարգի վերաբերյալ օրենքի նախագծի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի նոյեմբերի 22—24-ի համարներում։*



## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ПРОМЫШЛЕННЫЕ ТЕМЫ



### СЕЛЬСКОХОЗЯЙСТВЕННЫЕ ТЕМЫ



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի
1960 ԹՎԱԿԱՆԻ
ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

*1 ամիսը— 1 ռ. 50 կ.*

*6 ամիսը— 9 ռ.*

*12 ամիսը— 18 ռ.*

*Մեկ համարը 75 կոպեկ*

*ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ*


**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 23 1959 г.**

*ՎՖ 08874 Պատվեր 813 Տիրաժ 8535*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*